Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք։

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 11 ՀՈՒՆԻՍ 1959

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

Ագիտատորը յոթնամյա պլանը կատարողների առաջին շարքերում . . . . . . . . . 1

Նյութեր զրույցների համար

Կ. ՊՈՂՈՍՅԱՆ— Գրականությունը ծառայում է ժողովրդին . . . . . . . . . . . . 10

Գյուղատնտեսական թեմաներ

Լ. ՂԱՐԻԲՅԱՆ— Ա. Գիտալովի և Ն. Մանուկովսկու օրինակով . . . . . . . . . . . 21

Առաջավորների փորձից

Հ. ՋԻՐՈՅԱՆ— Ինչպես հասանք կովերի բարձր կաթնատվության . . . . . . . . 31

Միջազգային թեմաներ

Գործազրկությունը Ամերիկայի Միացյալ Նահանգներում (թվեր և փաստեր) . . . . . . . 35

Օգտագործիր զրույցի ժամանակ

Ի՞նչ է տալու յոթնամյակի յուրաքանչյուր րոպեն (թվեր և փաստեր) . . . . . . . . 46

Խմբագրության հասցեն— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78

---

# ԱԳԻՏԱՏՈՐԸ ՅՈԹՆԱՄՅԱ ՊԼԱՆԸ ԿԱՏԱՐՈՂՆԵՐԻ ԱՌԱՋԻՆ ՇԱՐՔԵՐՈՒՄ

ՍՄԿԿ XXI համագումարը պարտիային և ժողովրդին զինեց կոմունիստական շինարարության հոյակապ ծրագրով։

Մեր մեծ երկիրն այժմ թևակոխել է իր պատմական զարգացման նոր շրջանը և հաստատ քայլերով ու վստահորեն առաջ է շարժվում կոմունիզմի ճանապարհով։ Կոմունիզմի կառուցումը սովետական ժողովրդին միշտ ոգեշնչել և այժմ էլ ոգեշնչում է նորանոր սխրագործությունների։

Պարտիայի XXI համագումարում խոսելով կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանի մասին, ընկեր Ն. Ս. Խրուշչովը նշեց, որ այդ ժամանակաշրջանի գլխավոր խնդիրները կլինեն կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի համակողմանի ստեղծման, մեր Հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորության հետագա ամրապնդման և միաժամանակ սովետական ժողովրդի նյութա-



կան ու հոգևոր հարաճուն պահանջմունքների ավելի ու ավելի լրիվ բավարարման խնդիրները։

Նշված վիթխարի խնդիրները պատվով կատարելու գործում խոշոր նշանակություն ունի քաղաքական ագիտացիան, աշխատավորների լայն շրջանում կատարվող մասսայական-բացատրական աշխատանքը։

Վերջերս ՍՄԿՊ Կենտկոմը որոշում ընդունելով «Ստալինյան մարզի աշխատավորության մեջ տարվող մասսայական-քաղաքական աշխատանքի վիճակի և բարելավման միջոցառումների մասին», պարտիական կազմակերպություններից պահանջեց վճռականորեն բարձրացնել գաղափարական-քաղաքական և կազմակերպչական աշխատանքի մակարդակը, համակողմանի և լայնորեն օգտագործել մասսաների կոմունիստական դաստիարակության բոլոր բազմազան ձևերն ու միջոցները, մոբիլիզացնել սովետական ժողովրդի ստեղծագործ ուժերը՝ յոթնամյակի պլանը կատարելու և գերակատարելու համար։

Այդ կարևորագույն որոշումը մեր բոլոր պարտիական կազմակերպությունների, ա-



գիտկոլեկտիվների և ագիտատորների աշխատանքի մարտական ծրագիրն է։

Այժմ յուրաքանչյուր ագիտատորի պատվի խնդիրն է լինել յոթնամյա պլանը գերազանց կատարելու համար մղվող պայքարի առաջին շարքերում, բարձրացնել աշխատավորների քաղաքական և աշխատանքային ակտիվությունը, օգնել նրանց ստանձնած պարտավորությունները ժամկետից շուտ և անթերի կատարելու համար։

ՍՄԿՊ Կենտկոմի որոշման մեջ տրված են քաղաքական-մասսայական աշխատանքի այն հիմնական խնդիրները, որ պետք է սիստեմատիկաբար կատարեն ագիտատորները։

ՍՄԿՊ Կենտկոմը առաջնակարգ խնդիր է համարում պարտիայի XXI համագումարին ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին Ն. Ս. Խրուշչովի զեկուցման, ՍՄԿՊ XXI պատմական արտահերթ համագումարի որոշումների խոր ուսումնասիրությունն ու պարզաբանումը, մասսաների մեջ բազմակողմանի պարտիական-քաղաքական աշխատանք ծավալելը՝ ժողովրդի բոլոր ուժերը մոբիլիզացնելու ուղղությամբ այդ որոշումները կենսագործելու, ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթ-

ամյա պլանի առաջադրանքները կատարելու և գերակատարելու համար։

Որոշման մեջ ամենայն պարզությամբ ընդգծվում է, որ կոմունիզմի կառուցումը օրգանապես կապված է բոլոր քաղաքացիների գիտակցության անընդհատ բարձրացման, աշխատավորներին, առանձնապես երիտասարդությանը, կոմունիստական բարոյականության, աշխատանքի, հասարակության հանդեպ իրենց պարտականությունների նկատմամբ ճիշտ վերաբերմունքի ոգով դաստիարակելու հետ։

Խնդիր է դրվում ունկնդիրներին խորապես պարզաբանել սովետական ժողովրդի մեծ հաղթանակների նշանակությունը, որոնք նշանավորում են պարտիայի լենինյան գծի հաղթանակը, ամենայն մանրամասնությամբ պարզաբանել կոմունիստական շինարարության փայլուն հեռանկարները, աշխատավորությանը ոգեշնչել ՍՄԿԿ XXI համագումարի պատմական որոշումները կատարելու համար։

Գաղափարական-դաստիարակչական մասսայական-քաղաքական ամբողջ աշխատանքը պետք է լինի կոնկրետ ու նպատակասլաց, նպաստի սովետական ժողովրդի ջանքերի մոբիլիզացմանը։ Այն պետք է խթանի



դրվի ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի առաջադրանքների կենսագործման, 1959 թվականի յոթնամյակի առաջին տարվա պլանի կատարման և գերակատարման համար։ Ագիտատորներից պահանջվում է պարզ և մատչելի ձևով աշխատավորներին բացատրել, թե ինչ է կոմունիզմը, ինչպիսի մեծ բարիքներ է բերում նա ժողովրդին, ակտիվ կերպով պաշտպանել և ամեն կերպ զարգացնել կոմունիզմի ծիլերը։

Կենտրոնական Կոմիտեն սովորեցնում է, որ կոմունիստական իդեալները կարող են կենսագործվել միայն հասարակության նյութական և հոգևոր բարիքների առատության պայմաններում, իսկ այդ պայմաններն ստեղծվելու համար առաջնակարգ նշանակություն ունի մետաղի, մեքենաների արտադրությունը, հացահատիկի, մսի, յուղի, հագուստեղենի, կոշկեղենի արտադրությունը, բնակարանների շինարարությունը։ Ուստի ագիտատորների կարևորագույն պարտականությունն է յուրաքանչյուր աշխատավորի գիտակցությանը հասցնել, որ մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ առաջ անցնել առաջավոր կապիտալիստական երկրնե-

րին հասնելու և անցնելու խնդիրը հաջողությամբ կլուծվի միայն այն ժամանակ, երբ մենք հասնենք աշխատանքի ավելի բարձր արտադրողականության։ Հարկավոր է սիստեմատիկաբար պարզաբանել աշխատավորներին, որ յոթնամյա պլանի կատարումն ու գերակատարումը նոր խոշոր քայլ կհանդիսանա կոմունիզմի ճանապարհին, որ տնտեսության բոլոր ճյուղերի նոր վերելքը և այդ հիման վրա ժողովրդի կենսամակարդակի նշանակալի բարձրացումը կախված են բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ինտելիգենցիայի ջանքերից, սովետական յուրաքանչյուր մարդու բարձր արտադրողական աշխատանքից։

Կենտրոնական Կոմիտեն հիշեցնում է, որ կյանքի, գործնական խնդիրների հետ քաղաքական-մասսայական աշխատանքի ավելի սերտ կապը նրա հաջողության գրավականն է։ Անհրաժեշտ է, որ աշխատավորները իմանան ոչ միայն ընդհանուր թվեր, այլև այն թե տվյալ ձեռնարկությունը, կոլտնտեսությունը, սովխոզը, որտեղ աշխատում է ինքը, երբ, ինչ է կատարելու, ինչպիսի ներքին ռեզերվներ կան և ինչպես կարելի է այն լավ օգտագործել։



Արդյունաբերական ձեռնարկությունների ագիտատորները, պարտկազմակերպությունների ղեկավարությամբ, ագիտացիան պետք է կազմակերպեն այնպես, որ ապահովվի յուրաքանչյուր ձեռնարկության, տեղամասի, ցեխի, բրիգադայի, յուրաքանչյուր բանվորի արտադրական պլանի անպայման կատարումը, ռիթմիկ աշխատանքը, աշխատանքի արտադրողականության ամեն կերպ բարձրացումը, որակի բարելավումը, թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցումը, միջոցների ու նյութերի խստագույն խնայողությունը, արտադրության մեքենայացման և ավտոմատացման լայն ներդրումը, նոր տեխնիկայի յուրացումն ու լավագույն օգտագործումը, առաջավոր փորձի պրոպագանդումն ու ներդրումը։

Գյուղատնտեսության բնագավառում աշխատող ագիտատորների խնդիրն է գլխավոր ուշադրությունը կենտրոնացնել ՍՄԿԿ XXI համագումարի ցուցումների և ՍՄԿԿ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի որոշման բազմակողմանի պարզաբանման և կենսագործման վրա։ Ուժեղացնել պայքարը գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվության հետագա բարձրացման, հան-

բային, կոլտնտեսային անասունների գլխաքանակի աճի և բարձր մթերատվության, կոլտնտեսություններում ու սովխոզներում առաջին հերթին եգիպտացորենի ցանքերի հետագա ավելացման հաշվին կերի կայուն բազայի ստեղծման, գյուղատնտեսական տեխնիկայի խնամքով և առավել լրիվ օգտագործման, կոլտնտեսությունների կազմակերպական-տնտեսական ամրապնդման, կոլտնտեսային միջոցների ու աշխօրերի ծախսման գործում ավելորդությունների լիկվիդացման համար։ Անհրաժեշտ է բացատրել կոլտնտեսականներին, ինչպես նաև սովխոզների ու ՆՏԿ-ների բանվորներին, որ ներկայումս գյուղատնտեսության մեջ, ինչպես նաև ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում առաջին պլանին են քաշվում աշխատանքի արտադրողականության կազմակերպման ու բարձրացման, արտադրանքի մեկ միավորի վրա կատարվող ծախսերի կրճատման հարցերը։

Բոլոր ագիտատորների խնդիրն է ունկնդիրներին պատմել 1959 թվականի ստանձնած պարտավորությունները կատարելու մասին, օգնել ետ մնացողներին առաջավորներին հասնելու համար։



Ագիտատորների առաջնահերթ խնդիրներից մեկը առաջավոր փորձի ընդհանրացումն ու տարածումն է։ Հարկավոր է հանգամանորեն և համոզիչ կերպով պատմել աշխատանքի առաջավորների փորձի մասին, պարզաբանել թե նրանք ինչպես կարողացան հասնել բարձր ցուցանիշների։ Անհրաժեշտ է պարբերաբար մասսայականացնել կոմունիստական աշխատանքի բրիգադաների փորձը։

Մեծ անելիքներ ունեն հատկապես ետ մնացող ձեռնարկությունների և կոլտնտեսությունների ագիտատորները։ Նրանք պետք է գործադրեն բոլոր միջոցներն ու հնարավորությունները կարճ ժամանակում հաղթահարելու իրենց ձեռնարկությունների ու կոլտնտեսությունների ետ մնալը և հասցնեն նրանց առաջավորների մակարդակին։

Ագիտատորների պարտքն է ուժեղացնել աշխատավորների լայն շրջանում կատարվող ագիտացիոն-բացատրական աշխատանքը և միշտ գտնվել յոթնամյա պլանը կատարողների առաջին շարքերում։

---

# ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԾԱՌԱՅՈՒՄ Է ԺՈՂՈՎՐԴԻՆ

Կ. ՊՈՂՈՍՅԱՆ

*Ավարտվեց ՍՍՌՄ Գրողների երրորդ համագումարը, որը տեղի ունեցավ այնպիսի ժամանակաշրջանում, երբ մեր սոցիալիստական մեծ Հայրենիքը թևակոխել է իր զարգացման նոր, կարևորագույն ժամանակաշրջանը, կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը, երբ սովետական ամբողջ ժողովուրդը խանդավառությամբ պայքարում է սոցիալիստական տնտեսության, կուլտուրայի և աշխատավորների բարեկեցության հետագա վերելքի ու բարգավաճման վերաբերյալ ՍՄԿՊ XXI համագումարի ընդունած փառահեղ ծրագրի կենսագործման համար։*

*Սովետական Միության Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը միշտ էլ մեծ ուշադրություն են նվիրել գրականության զարգացման հարցերին, հաշվի առնելով նրա դաստիարակչական հսկայական նշանակությունը կոմունիստական հասարակարգ կառուցող մեր ժողովրդի և մատաղ սերնդի հոգևոր ու բարոյական կերպարը ձևավորելու գործում։*



*Սովետական գրականությունը զինված մարքսիզմ-լենինիզմի ամենահումանիստական և առաջավոր գաղափարներով՝ միշտ էլ քայլել է կյանքի հետ համընթաց, ոգևորել է մեր մարդկանց ձեռք բերած հաջողությունների համար, ձաղկել ու մերկացրել է այդ առաջընթացը արգելակողներին, հնի մնացուկները կրողներին։*

*Պարտիայի XXI համագումարը մեծ ու պատվավոր խնդիրներ է դրել գրողների առաջ։ Համագումարը գրողներից պահանջում է է՛լ ավելի ակտիվորեն մասնակցել ժողովրդի կյանքին ու պայքարին՝ յոթնամյա պլանը կատարելու, մասսաներին կոմունիզմի ոգով դաստիարակելու գործում։*

*«Ժողովրդին ծառայելը,— ասաց ընկ. Ն. Ս. Խրուշչովը ՍՍՌՄ Գրողների երրորդ համագումարում,— գրողների ամենաբարձր կոչումն է։ Մարդու համար չկա ավելի մեծ երջանկություն, քան ապրել կոլեկտիվում,*

աշխատել կոլեկտիվի հետ և գիտակցել, որ
դու աշխատում ես ի բարօրություն քո հա-
սարակության, ի բարօրություն ժողովրդի»։
ՍՍՌՄ Գրողների երրորդ համագումարը
ցույց տվեց, որ սովետական գրողները
ջանք չեն խնայել և չեն խնայի աշխատա-
վորներին կոմունիստական ոգով դաստիա-
րակելու գործում։
ՍՍՌՄ Գրողների երրորդ համագումարը
նոր հաջողություններով դիմավորեցին նաև
հայ գրողները, որոնք վերջին չորս տարի-
ների ընթացքում իրենց քրտնաջան և բեղմ-
նավոր աշխատանքի շնորհիվ հայ գրակա-
նությունը հարստացրել են արձակի, պոե-
զիայի և դրամատուրգիայի շատ նշանակա-
լի ստեղծագործություններով։

Սովետահայ գրականության վերջին շըր-
ջանի հաստնության մասին է խոսում այն
փաստը, որ վեպը՝ լինելով լայն ընթերցող-
ներին առավել մատչելի գրական ժանր,
հաստատուն կերպով առաջատար տեղ է
գրավել։ Սովետահայ արձակում բազմա-
կողմանիորեն վերարտադրված է կոլտնտե-
սային գյուղացիության կյանքը։ Վերջին
տարիների վեպերում ցույց են տրված գյու-
ղատնտեսության մեջ եղած դժվարություն-



ները հաղթահարելու պրոցեսները, կերտված
են ժամանակակից գյուղի մարդկանց կեն-
դանի կերպարներ։

Մեր արձակի նշանավոր նվաճումներից է
Սերո Խանզադյանի «Հողը» վեպը, որտեղ
բացահայտված է հայկական կոլտնտեսային
գյուղի նոր կողմերը, սոցիալիստական դաշ-
տերի աշխատավորների ներքնաշխարհը։
Կոլտնտեսային գյուղացիության կյանքին է
նվիրված նաև Ք. Թափալցյանի «Ոսկե հո-
վիտը» վեպը։

Ժամանակակից կյանքի յուրօրինակ ըմ-
բըռնմամբ ու անմիջականությամբ աչքի է
ընկնում Անահիտ Սեկոյանի «Ոսկե վազերի
մեջ» վեպը։

Սովետահայ արձակի մեջ թարմ հոսանք
են մտցրել արտասահմանյան երկրներում,
մասնավորապես Իրանում և Մերձավոր Ա-
րևելքում իմպերիալիստական ռեակցիայի
դեմ դեմոկրատական ուժերի ծավալած
պայքարին նվիրված ստեղծագործություն-
ները։ Այս տեսակետից ուշագրավ են՝
Աբիգ Ավագյանի «Շիկացած հողը»,
Ստեփան Ալաջաջյանի «Պարտություն»,
Շաքլյանի «Ֆելլախներ» վեպերը։ Այս վե-
պերում ցույց է տրված այդ երկրներում

ապրող հայ պրոգրեսիվ ուժերի համագործակցությունը տեղի ռևոլյուցիոնորեն տրամադրված հայրենասերների հետ, որոնք պայքարի են ելել հանուն իրենց ժողովուրդների անկախության։

Հայ արձակագիրների համար հարուստ թեմա է եղել Հայրենական Մեծ պատերազմում սովետական մարտիկների և մեր ժողովրդի կատարած սխրագործությունները, որը անսպառ նյութ է տալիս սովետական մարդկանց բնավորության լավագույն հատկանիշները՝ արիությունը, հայրենասիրությունը պատկերելու համար։ Այս նպատակին են նվիրված Գ. Սևունցի «Գերիները» և Մ. Շաթիրյանի «Զինվորները» վեպերը։

Հայ ժողովրդի նախասովետական շրջանի տրագիկ պատմության, ռուս մեծ ժողովրդի հետ բարեկամության, Հայաստանում սովետական կարգերի հաստատմանն ու նրա առաջին տարիների պատկերմանն են նվիրված Ստեփան Զորյանի «Ամիրյանների ընտանիքը», Անահիտ Սահինյանի «Ծարավ» վեպերը և այլն։

Արկածային վեպի բնագավառում շարունակում է հաջողությամբ ստեղծագործել «Հովազաձորի գերիները» վեպի հեղինակ Վաղթանգ Անանյանը։



ՍՍՌՄ Գրողների երկրորդ համագումարից հետո նշանակալի տեղաշարժեր են կատարվել սովետահայ պոեզիայի բնագավառում։ Մեր պոետները հանդես են եկել նոր հաջող ստեղծագործություններով։ Սովետական պոեզիայի զարգացման վերջին տարիների հատկանշական կողմն այն է, որ բանաստեղծական գործերի գլխավոր թեման է դարձել արդիականությունը՝ սովետական մարդկանց հարուստ հոգեկան աշխարհը։ Պոեզիան է՛լ ավելի է մերձեցել համաժողովրդական պայքարին, հագեցվել է կենսական բովանդակությամբ։ Զարգացման նոր աստիճանի է հասել բանաստեղծական արվեստը ։Ավագ սերնդի պոետները հարըստացրել են իրենց նախորդ տարիների նվաճումները։ Գեղամ Սարյանի, Նաիրի Զարյանի նոր բանաստեղծությունները, Ալազանի «Հորիզոններ», Սարմենի «Կարոտի կրակներ», Տարոնցու «Ավելի շատ լույս», Նորենցի «Իմ աշխարհը», Հռիփսիմե Պողոսյանի «Անձրևից հետո», Վահան Գրիգորյանի «Երախտագիտություն» ժողովածուները և շատ ուրիշ գործեր վկայում են նրանց ստեղծագործության թեմատիկ և ժանրային բազմազանության, պատկերման միջոցների նոր որոնումների մասին։

Սովետական հայրենասիրությունը ոգեշնչման անսպառ աղբյուր է։ Մեր պոետները Հայրենիքի մասին ստեղծել են բազմաթիվ արժեքավոր գործեր, որոնք արտահայտում են այն վեհ գաղափարը, որ մեր անծայրածիր երկրների ժողովուրդները, լենինյան միասնությամբ համախմբված, կերտում են մարդկության իսկական պատմությունը։

Դարաշրջանի հետ սերտորեն կապված լինելը, կյանքի բարդ ու հակասական երևույթների ինքնատիպ մեկնաբանությունը, պոետական նոր խոսքի որոնումները ցայտուն կերպով դրսևորվել են նաև երիտասարդ սերնդի պոետների ժողովածուներում, Սիլվա Կապուտիկյանի «Բարի ճանապարհ», Համո Սահյանի «Բարձունքում», Վահագն Դավթյանի «Լուսաբացը լեռներում», Գևորգ էմինի «Որոնում», Մարո Մարգարյանի «Լիրիկական լուսաբաց» և այլն։

Սակայն մեր պոեզիայում քիչ չեն և ստվերոտ կողմերը։ Անհրաժեշտ է, որպեսզի մեր պոետները խուսափեն լիրիկայի անվան տակ, ալբոմային, հասարակականորեն անարժեք մտքեր ու տրամադրություններ քարոզելուց։



Վերջին տարիներս հայ պոեզիայի մեջ մուտք են գործել շատ տաղանդավոր երիտասարդներ, որոնց պետք է դաստիարակել Հակոբ Հակոբյանի, Եղիշե Չարենցի և ավագ սերնդի այլ բանաստեղծների կողմից ստեղծած տրադիցիաներով։

Երկու տարի առաջ սովետահայ դրամատուրգիան դժվարին վիճակում էր։ Գ. Սունդուկյանի անվան դրամատիկական թատրոնը 1956 թվականին հայկական արվեստի ու գրականության՝ Մոսկվայում կայացած տասնօրյակին իր խաղացանկում ժամանակակից թեմայով ոչ մի ներկայացում չուներ։ Հայ դրամատուրգների և ռեսպուբլիկայի թատրոնների ստեղծագործողների առջև ամբողջ սրությամբ ծառացավ այդ բացը վերացնելու խնդիրը։ Եվ ահա 1957 թվականի վերջերին մեկը մյուսի ետևից մեր թատրոնների բեմերի վրա ակսեցին երևալ Գ. Բորյանի «Նույն հարկի տակ», Արաքսմանյանի «Վարդեր և արյուն», Գուլակյանի «Մարդիկ և օրեր անմոռաց», Գ. Տեր-Գրիգորյանի «Վերջին մեխակները» և այլ պիեսներ։

Հայ ժողովրդի պայքարը հանուն ազատության և անկախության բազմիցս պատկերվել է Սունդուկյանի անվան թատրոնի բեմում։ Հիշատակենք թեկուզ Վ. Վաղարշյանի «Օղա-



կում», Գուլակյանի «Լուսաբացին» պիեսնե-
րի բեմադրությունը, որոնք արտացոլում են
քաղաքացիական պատերազմները Հայաս-
տանում։ Թատրոնը նորից այս թեմային է
անդրադառնում բեմադրելով Գ. Բորյանի
«Նույն հարկի տակ» պիեսը։

Ռեսպուբլիկայի բեմերում հաջողությամբ
ընթացան նաև Արաքսմանյանի «Վարդեր և
արյուն» պիեսի ներկայացումները։ Պիեսում
արտացոլված է հայ ժողովրդի հերոսական
պայքարը 1920 թվականի մայիսյան օրերին։

Այս պիեսներին հաջորդեցին ժամանակա-
կից թեմայով գրված մի շարք նոր պիես-
ներ՝ ինչպես Գ. Տեր-Գրիգորյանի «Վերջին
մեխակները», Ժ. Հարությունյանի «Սրտի
արատ»-ը, Մ. Շաթիրյանի «Երաժշտա-
խումբ»-ը և այլն։

Վերջին տարիներս մեկը մյուսի ետևից
սկսեցին լույս տեսնել հայ գրականության
կլասիկների՝ Րաֆֆու, Պարոնյանի, Պատ-
կանյանի, Ալիշանի և այլոց ստեղծագոր-
ծությունները։ Հայ գրականությունը հարըս-
տացավ Եղիշե Չարենցի, Ակսել Բակունցի,
Վահան Թոթովենցի և ուրիշների ստեղծա-
գործություններով։



Նկատելիորեն աշխուժացել է գրականա-
գիտական միտքը։ Երևան են եկել մոնոգրա-
ֆիաներ, որոնցում առավել կամ նվազ հա-
ջողությամբ վեր են հանված գրական ժա-
ռանգությունը օգտագործելու հարցերը և
լուծված սովետահայ գրականության առջև
ծառացած մի շարք խնդիրներ։ Ինչպես Ար-
սեն Տերտերյանի «Պերճ Պռոշյան», Վ. Պար-
տիզունու «Մուրացան», Գ. Հովսեփյանի
«Հովհաննես Հովհաննիսյանը», ինչպես նաև
գրականագիտության հարցերին նվիրված
գրքերի մի ամբողջ սերիա։

Մեր ռեսպուբլիկայում մեծ աշխուժություն
է նկատվում նաև գեղարվեստական գրակա-
նության հրատարակման գործում։ Դրանում
համոզվելու համար բավական է բերել հե-
տևյալ օրինակը։ Եթե 1955 թվականին Հայ-
պետհրատի կողմից լույս է ընծայվել միայն
ժամանակակից գրողների 54 անուն գիրք,
որից 31-ը վեպեր ու պատմվածքների ժո-
ղովածուներ, 23-ը բանաստեղծությունների
ժողովածուներ, ապա 1958 թվականին Հայ-
պետհրատի կողմից լույս է ընծայվել սովե-
տահայ գրողների 93 անուն գիրք, որից
45-ը վեպ, 48-ը բանաստեղծությունների ժո-
ղովածուներ։

Սովետահայ գրականությունն այն ջրառատ վտակներից մեկն է, որը սնում է մեր ժողովրդի շահերն ու իղձերն արտահայտող սովետական բազմազգ գրականության հզոր գետը։

Ընկեր Ն. Ս. Խրուշչովը խոսելով ժողովրդի կյանքի հետ գրականության և արվեստի սերտ կապի մասին, ասել է. «...զարգացման գլխավոր գիծն այն է, որ գրականությունը և արվեստը միշտ անխզելիորեն կապված լինեն ժողովրդի կյանքի հետ, ճշմարտացիորեն արտացոլեն մեր սոցիալիստական իրականության հարստությունն ու բազմազանությունը, ցայտուն և համոզիչ կերպով ցույց տան սովետական ժողովրդի վերափոխիչ մեծ գործունեությունը, նրա ձգտումների ու նպատակների վեհությունը, բարոյական բարձր հատկությունները»։

Գրել ճշմարտությունը, անսահմանորեն ծառայել ժողովրդին, տալ կոմունիզմի վեհ գաղափարները, ստեղծել մեր էպոխային արժանի արվեստ՝ ահա ինչի է կոչում պարտիան գրողներին։ Սրա գրավականն այն է, որ Հայաստանի գրողները ունեն նույն խոհերն ու ձգտումները, ինչ որ հարազատ ժողովուրդը։

---

ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԹԵՄԱՆԵՐ

# Ա. ԳԻՏԱԼՈՎԻ ԵՎ Ն. ՄԱՆՈՒԿՈՎՍԿՈՒ ՕՐԻՆԱԿՈՎ

## Լ. ՂԱՐԻԲՅԱՆ

Սոցիալիստական Աշխատանքի կրկնակի հերոս, ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ Ալեքսանդր Գիտալովը Կիրովոգրադի մարզի Նովո-Ուկրաինսկի շրջանի ՍՄԿՊ XX համագումարի անվան կոլտնտեսության տրակտորային բրիգադայի բրիգադիրն է, իսկ Նիկոլայ Մանուկովսկին Վորոնեժի մարզի Նովո-Ուսմանսկի շրջանի Կիրովի անվան կոլտնտեսության տրակտորիստը։

Լիովին տիրապետելով իրենց հանձնարարված տեխնիկային, նրանք մեծ տարածությունների վրա շարահերկ կուլտուրաներ՝ եգիպտացորեն, արևածաղիկ ու շաքարի ճակնդեղ են մշակում առանց ձեռքի աշխատանքի գործադրման։ Այսպիսով նրանք աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի մեկ միավորի վրա կատարվող աշխատանքի ու միջոցների

*ծախսումների կրճատման փայլուն օրինակներ են տալիս։*

*ՍՄԿՊ Դեկտեմբերյան պլենումում ընկ. Ն. Ս. Խրուշչովը բարձր գնահատեց մեր երկրի անվանի մեխանիզատորների հայրենասիրական նախաձեռնությունը, նրանց աշխատանքի մեթոդի ունեցած համապետական նշանակությունը։* «Եթե մենք,— ասաց նա,— մարդկանց սովորեցնենք աշխատել այնպես, ինչպես աշխատում են ընկ. Մանուկովսկին իր զուգընկերոջ հետ և ինչպես աշխատում են ընկ. Գիտալովն ու մյուսները, ապա մենք արագորեն կլուծենք գյուղատնտեսական մթերքների արտադրության շեշտակի ավելացման խնդիրը»:

*1958 թվականին Ալեքսանդր Գիտալովի ղեկավարած տրակտորային բրիգադան պարտավորություն ստանձնեց մեխանիզմների օգնությամբ մշակել 500 հեկտար եգիպտացորեն և յուրաքանչյուր հեկտարից ստանալ 35 ցենտներ հատիկ ու 350 ցենտներ կանաչ մասսա։*

*Բրիգադայում նրանք կազմակերպեցին հինգ մեքենայացված ագրեգատ։ Դրանցից յուրաքանչյուրն ուներ մեկ տրակտոր և անհրաժեշտ քանակությամբ գյուղատնտեսական մեքենաներ՝ կախովի գութան, շա-*



*փալարի անկյունագծային տեղափոխում կատարող սարք ունեցող կախովի քառակուսի բնային շարքացան, կախովի կուլտիվատոր-բուսասնիչ, տափան, ինքնաբեռնաթափվող սայլակ և այլն։ Եգիպտացորենի բերքահավաքի համար բրիգադան ստացավ երկու սիլոսահավաք և երկու եգիպտացորենահավաք կոմբայն։*

*Յուրաքանչյուր ագրեգատի ամրացված էր մոտավորապես հարյուր հեկտար եգիպտացորեն։ Բոլոր աշխատանքները՝ հողի նախացանքային մշակությունը, ցանքը, ցանքերի խնամքը, բերքահավաքը կատարեցին երկու հերթափոխի տրակտորները։*

*Օգտագործելով ՍԿԳԿ—64 և ՍԿԳՆ—6 մարկաների շարքացաններ, բրիգադան ցանքը կատարում էր բացառապես քառակուսի-բնային եղանակով։ Ցանքը կատարվում էր կալիբրովկայի ենթարկված սերմերով, որը հնարավորություն տվեց յուրաքանչյուր բնի մեջ գցել 2—3 հատիկ. այսպիսով հնարավոր եղավ խուսափել այնպիսի աշխատատար աշխատանքից, որպիսին նոսրացումն է, ինչպես նաև չկիրառել ձեռքի աշխատանք միջշարային տարածությունների մշակության վրա։*

Հողի նախացանքային մշակության աշխատանքների 100 հեկտարի վրա բրիգադան ծախսեց 47 մարդ—օր՝ նորմայով նախատեսված 53-ի փոխարեն։

Բրիգադան աշխատանքի ծախսումների մեծ խնայողություն ունեցավ կցովի մեքենաները զուգակցելու և կախովի մեքենաների ներդրման շնորհիվ։ Ահա մի օրինակ։ Ջափալարը ձեռքով տեղափոխելու վրա աշխատում էին 7—8 մարդ. աշխատելով եգիպտացորենի կախովի ՍԿԳՆ—6 շարքացանով, որի հետ տրվում է չափալարի մեխանիկական անկյունագծային տեղափոխում կատարող սարք, այդ աշխատանքը կատարում էր միայն ինքը՝ տրակտորիստը և ճիշտ քառակուսիներ ստանում։

Անվանի մեխանիզատորի ղեկավարած բրիգադան անցյալ տարի ցույց տվեց նաև շաքարի ճակնդեղի մշակության լավագույն օրինակ։ 442 հեկտար ճակնդեղի բոլոր դաշտերը բրիգադան մշակեց մեքենայական եղանակով՝ երկու ուղղությամբ։ Դա հնարավորություն տվեց ճակնդեղի նոսրացման ժամկետները կրճատել երկու անգամ և խնայել 4.500 աշխօր, ըստ որում յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը բարձրացավ 50—60 ցենտներով։



Եվ այսպես, եգիպտացորենի մշակության աշխատանքների կոմպլեքսային մեքենայացման շնորհիվ Ալեքսանդր Գիտալովի ղեկավարած տրակտորային բրիգադան անցյալ տարի հասավ հետևյալ արդյունքների. նրա արտադրած մեկ ցենտներ հատիկի արժեքը կազմեց 3 ռուբլի 50 կոպեկ՝ կոլտնտեսության ունեցած մնացած տարածության 5 ռուբլի 10 կոպեկի դիմաց, իսկ կանաչ մասսայի ցենտների արժեքը՝ 43 կոպեկ՝ 65-ի դիմաց։ Ցանքի աշխատանքներից բրիգադան խնայեց 528 մարդ-օր և բույսերի նոսրացումից՝ 1800 մարդ-օր։ Մեկ հեկտար եգիպտացորենի աճեցման վրա ընդամենը ծախսվեց 7,8 աշխօր, իսկ սովորական մշակության մնացած տարածության վրա՝ 21 աշխօր։ Իր ստանձնած պարտավորությունը կատարելով հանդերձ, եգիպտացորենի մեկ տոննա սիլոս ստանալու վրա բրիգադան ծախսեց մեկ մարդ—օր։

Ոգեշնչված պարտիայի XXI համագումարի պատմական որոշումներով, Ա. Գիտալովի բրիգադան պարտավորություն է ստանձնել այս տարի, առանց ձեռքի աշխատանքի գործադրման, եգիպտացորենի 225 հեկտար ցանքի յուրաքանչյուր հեկտարից ստանալ 50 ցենտներ հատիկ, իսկ 500 հեկ-

տար տարածության յուրաքանչյուր հեկտա-րից՝ 400 ցենտներ կանաչ մասսա։



Նիկոլայ Մանուկովսկին չորրորդ տարին է, ինչ իր զուգընկերների հետ միասին եգիպտացորեն է մշակում առանց ձեռքի աշխատանքի գործադրման։

1958 թվականին նա Իվան Վիսոցկու հետ միասին պարտավորություն ստանձնեց եգիպտացորեն աճեցնել 200 հեկտարի վրա և յուրաքանչյուր հեկտարից ստանալ 400 ցենտներ կանաչ մասսա։ Այդ պարտավորությունը նրանք կատարեցին և յուրաքանչյուր հեկտարից ստացան 412 ցենտներ կանաչ մասսա կողրերով։ Նրանց տրամադրության տակ կային «Բելոռուս» տրակտոր, չափալարի մեխանիկական անկյունագծային տեղափոխում կատարող հարմարանք ունեցող քառակուսի-բնային շարքացան, ԿՌՆ—4,2 կախովի կուլտիվատոր, ՍԿ—2,6 սիլոսահավաք կոմբայն և ԿՈՒ—2 եգիպտացորենահավաք կոմբայն։

Ահա թե նրանք ինչպես են կազմակերպում իրենց աշխատանքը և ինչ ձևով են աշխատում։ Նրանք դաշտը լավ մշակում են և հարթեցնում, քանի որ առանց դրա հնա-



րավոր չէ չափալարի անկյունագծային տեղափոխումով քառակուսի-բնային ցանք կատարել։

Խոնավությունը հողում պահելու համար վաղ գարնանը, հենց որ ցրտահերկի մակերեսը չորանում է, նրանք դաշտը փոցխում են երկու հետքով։ Մինչև ցանքը եռակի կուլտիվացիա են կատարում միաժամանակյա փոցխման հետ միասին։ Վերջին կուլտիվացիան կատարում են անմիջապես ցանքից առաջ։

Կողրերը կալսում են վերասաբքավորված ինքնագնաց կոմբայնով, սերմերը կալիբրովկայի ենթարկում ՕՍՄ—3ՈՒ հատիկազտիչ մեքենայով։

Եգիպտացորենի ցանքը Մանուկովսկին և իր զուգընկերը կատարում են միասին՝ օգնելով իրար, իսկ ծիլերը դուրս գալուց հետո նրանցից մեկը կամ մյուսը ցանքը մշակում է «Բելոռուս» տրակտորի հետ ագրեգատավորված ԿՌՆ—4,2 կուլտիվատորով։ Առաջին կուլտիվացիան կատարում էին ընդլայնական ուղղությամբ, երկու միակողմանի թաթերով (ածելիներով) և մեկ սլաքաձև թաթով։ Թաթերի այսպիսի դասավորման դեպքում հողի մակերեսը հարթ է բռնացվում, առանց կատարների։ Հետագա

մշակությունները (երկրորդ և երրորդ) իրար էին հաջորդում երկայնական և ընդլայնական ուղղություններով։

Եգիպտացորենի բերքահավաքի համար նրանք օգտագործեցին ՍԿ—2,6, իսկ կողրերի անջատումը բերքահավաք կատարելիս՝ ԿՈՒ—2 կոմբայնով։ Նրանցից մեկն աշխատում էր որպես կոմբայնավար, մյուսը ղեկավարում էր տրակտորը։ Մեկ ժամում սիլոսահավաք կոմբայնով հավաքում էին 0,64 հեկտարի բերք։

Եվ այսպես, Մանուկովսկու մշակած եգիպտացորենի յուրաքանչյուր հեկտարի վրա կոլտնտեսությունը մոտ երեք և կես անգամ պակաս աշխօր ծախսեց, քան ծախսում էր սովորական եղանակով այն մշակելիս։

Ա. Գիտալովի և Ն. Մանուկովսկու օրինակով այս տարի երկրում աշխատում են հազարավոր մեխանիզատորներ ու տրակտորային բրիգադաներ։ Միայն Ուկրաինական ՍՍՌ-ում, որտեղ աշխատում է Ա. Գիտալովը, այս տարի ստեղծվել են շարահերկ կուլտուրաների մշակության մոտ 30 հազար օղակներ։

Մեր ռեսպուբլիկայում այս տարի եգիպտացորենի կոմպլեքսային մշակություն կա-



տարելու և բարձր բերք աճեցնելու պարտավորություն են ստանձնել Էջմիածնի շրջանի Լենինի անվան կոլտնտեսության մեխանիզատորներ Շ. Բարսեղյանը և Ա. Վարդանյանը, Վեդու շրջանի Շիրազլու գյուղի կոլտնտեսության տրակտորիստներ Ջ. Մուրթուզովը և Ի. Աքպարովը, Արտաշատի շրջանի Այգեստան գյուղի կոլտնտեսության մեխանիզատորներ Խ. Խաչատրյանը և Ս. Գյուլնազարյանը։

Լենինի անվան կոլտնտեսության մեխանիզատորները պարտավորություն են ստանձնել մշակել 55 հեկտար եգիպտացորեն և յուրաքանչյուր հեկտարից ստանալ 500 ցենտներ կանաչ մասսա։ Հեկտարից 650—700 ցենտներ կանաչ մասսա ստանալու պարտավորություն են ստանձնել Շիրազլու գյուղի տրակտորիստները, որոնք մշակում են 40 հեկտար եգիպտացորեն, իսկ Այգեստանցի մեխանիզատորներ Խ. Խաչատրյանը և Ս. Գյուլնազարյանը պայքարում են իրենց մշակած 25 հեկտար եգիպտացորենի յուրաքանչյուր հեկտարից ստանալ 600 ցենտներ սիլոսի մասսա։

Մեր թվարկած այս բոլոր տրակտորիստներն էլ լավագույն ձևով մշակեցին հողը,

այն առատորեն պարարտացրին օրգանական և հանքային պարարտանյութերով՝ այդ բոլոր աշխատանքները կատարելով մեխանիզմներով։ Եգիպտացորենի ցանքը նրանք կատարեցին քառակուսի-բնային եղանակով, 70×70 սմ. սխեմայով, դրա համար օգտագործելով չափալարի մեխանիկական անկյունագծային տեղափոխության սարք ունեցող ՍԿԳՆ—6 կախովի շարքացան, այն ագրեգատավորելով ԴՏ—24—2 տրակտորի հետ։

Այժմ, երբ երեք կոլտնտեսություններում արդեն կանաչին են տալիս այդ հայրենասեր մեխանիզատորների դաշտերը, պարզ տեսանելի են անթերի քառակուսիները։ Այդ նշանակում է, որ բույսերի երկկողմանի մեքենայական մշակությունն ապահովված է։

Երբ խոսում ես այս առաջավոր մեխանիզատորների հետ, նրանք միաբերան ասում են.

— Ալեքսանդր Գիտալովի և Նիկոլայ Մանուկովսկու օրինակով կարող են աշխատել մեր ռեսպուբլիկայի բոլոր մեխանիզատորները։

---



# ԻՆՉՊԵՍ ՀԱՍԱՆՔ ԿՈՎԵՐԻ ԲԱՐՁՐ ԿԱԹՆԱՏՎՈՒԹՅԱՆ

Հ. ՋԻՐՈՅԱՆ

Երբ անդրադառնում ենք մեր աշխատանքի նախորդ տարիների արդյունքներին, ապա այսօրվա հաջողությունները խիստ նկատելի են։ Տարիներ շարունակ Ղուկասյանի շրջանի Բաշ գյուղի կոլտնտեսությունը թերակատարում էր կաթնատվության իր պլանը, ֆուրաժային կովից ստանալով հազիվ 500—600 կիլոգրամ կաթ։

Ելնելով պարտիայի և կառավարության առաջադրած խնդիրներից և արդյունավետ օգտագործելով կոլտնտեսության ունեցած բոլոր հնարավորությունները, լուրջ կերպով վերակառուցեցինք մեր աշխատանքը և հասանք զգալի հաջողությունների։ Մեր աշխատանքներում իրենց պատշաճ տեղը գրավեցին առաջավոր փորձի ներդրումը և զոոտեխնիկական կանոնների կիրառումը։ Եթե 1954 թվականին կոլտնտեսության կաթի

*համախառն արտադրանքը կազմում էր 510 ցենտներ, ապա անցյալ տարի այն հասավ 1250 ցենտների։*

*Ինչպե՞ս հասանք այս հաջողությանը։*

*Կոլտնտեսականները անձնական փորձով համոզվել են, որ կովերի կաթնատվությունը կարելի է ապահովել ոչ միայն գարնանն ու ամռանը, այլև ձմռանը՝ մսուրային շրջանում։ Ուշադրության կենտրոնում դրվեց կովերի լավ կերակրումն ու խնամքը։ Մսուրային շրջանում կովերի կերակրումն ու ջրումը կատարվում էր սահմանված ռեժիմի համաձայն։ Կերը տրվում էր ըստ կովերի կենդանի քաշի ու կաթնատվության։ Նախօրոք կազմվում էր կերի ծախսման հաշվեկշիռը։ Մսուրային շրջանում յուրաքանչյուր կովին միջին հաշվով տրվում էր 7 կիլոգրամ խոտ, 8 կգ. ճակնդեղ, կամ 15 կգ. սիլոս, մեկ կգ. քուսպ, կամ գարու ալյուր և այլ տեսակի կերեր։ Սովորաբար կերերը տրվում էին նախապես մշակելուց հետո։*

*Գոմերում պահպանվում էր նորմալ ջերմաստիճան։ Անասնապահները օրվա բոլոր ժամերին լինում էին գոմերում։ Կովերին միշտ խոզանակով մաքրում էին, մաշկի կեղտոտված մասերը գոլ ջրով լվանում, չորացնում։ Սիստեմատիկաբար օդափոխում*



*գոմը, պահպանելով այնտեղ պատշաճ մաքրություն։*

*Կովերի լավ խնամքը, բացի կաթնատվությունից, նախապայման է նաև նրանց անկորուստ ու առողջ ծնի։ Լավ խնամքի շնորհիվ գարնանը կովերը դաշտ դուրս եկան բավարար գեր վիճակով, որն իր հերթին նպաստում է նրանց կաթնատվության բարձրացմանը։*

*Ռեժիմով է կատարվում նաև կովերի կիթը։ Առաջին կիթը կատարվում է առավոտյան ժամի 7-ին։ Յուրաքանչյուր կիթը տևում է 45—50 րոպե։ Քիչ կարևոր չէ նաև կրծի լավ խնամքը, որը նպաստում է կաթնատվության ավելացմանը։ Կթվորները կթելուց առաջ կուրծը լվանում են և մասաժ անում։ Յուրաքանչյուր կթին հաջորդում է կերակրումը։*

*Անասնապահները մեծ ուշադրություն են դարձնում նաև արոտային շրջանի աշխատանքների ճիշտ կազմակերպմանը, նրանք արոտավայրերը նախօրոք բաժանում են հատվածների և կիրառում արածեցման հերթափոխ եղանակը։ Արոտավայրերի ռացիոնալ օգտագործման շնորհիվ բաշգյուղացիները պայմաններ են ստեղծել արոտաանդերի բարելավման և բուսառատության հա-*

մար։ Արոտի ընթացքում կազմակերպվում է կովերի գիշերային արածեցում։

Կովերի կաթնատվության բարձրացման գործում բաշգյուղացիները լուրջ ուշադրություն են դարձնում կովերի ցեղի բարելավմանը։ Մեծ հոգատարությամբ խնամում և աճեցնում են բարձր մթերատու ծնողներից սերված հորթերին։ Այժմ ֆերմայի գրեթե բոլոր կովերը բարձր մթերատու խառնածիններ են։

Այս տարի մեքենայացման են ենթարկվելու ֆերմայի տիպային գոմի աշխատատար պրոցեսները։ 50 հեկտարով ավելացվելու է կերային կուլտուրաների ցանքատարածությունը, մասնավորապես կրկնապատկվելու է եգիպտացորենի ցանքատարածությունը։ Կառուցվելու է տիպային հորթանոց։

ՍՄԿԿ XXI համագումարի որոշումները սրբությամբ կենսագործելու և ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի առաջին տարին պատվով փակելու համար Բաշգյուղի անասնապահները պայքարում են բարձր ցուցանիշներով կատարել ստանձնած պարտավորությունները։

---



# ԳՈՐԾԱԶՐԿՈՒԹՅՈՒՆԸ ԱՄԵՐԻԿԱՅԻ ՄԻԱՑՅԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒՄ
## (Թվեր և փաստեր)

Ստորև հրապարակվող թվերն ու փաստերը գործազրկության մասին հիմնականում վերցված են առանձին կապիտալիստական երկրների պաշտոնական, կառավարական հաղորդագրություններից, բուրժուական քաղաքական գործիչների ելույթներից և բուրժուական մամուլի արտահայտություններից։ Այդ պատճառով էլ դրանք չեն բացահայտում գործազրկության իսկական պատկերը կապիտալիստական աշխարհում։ Սակայն նույնիսկ այդ դեռևս ոչ լրիվ և գունազարդված տվյալները հնարավորություն են տալիս դատելու այն մասին, թե ինչպիսի սոսկալի ողբերգություն են ապրում միլիոնավոր մարդիկ, որոնց կապիտալիզմը դատապարտել է գործազրկության, թշվառության և սովի տանջանքների։



ԱՄԵՐԻԿԱՅԻ ՄԻԱՑՅԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐ։ Ամերիկյան աջ պրոֆմիությունների լիդերների խոստովանությամբ, մասսայական խրոնիկական գործազրկությունը դառել է ԱՄՆ-ի ազգային աղետը։ 1959 թվականի գարնանը այստեղ հաշվվում էր մոտ 5 միլիոն գործազուրկ։ Եթե հաշվի առնել նաև նրանց ընտանիքները, ապա ստացվում է, որ մոտավորապես 20 միլիոն ամերիկացիներ զրկված են գոյության միջոցների մշտական եկամուտներից։ Բացի դրանից, ԱՄՆ-ի մոտ 10 միլիոն աշխատավորներ, որոնք նույնպես ընտանիքավորներ են, ունեն ոչ լրիվ բանվորական շաբաթ և ստանում են կրճատ աշխատավարձ։

Գործազրկությունը ընդգրկում է ամերիկյան էկոնոմիկայի կարևորագույն ճյուղերը, երկրի բոլոր արդյունաբերական հիմնական շրջանները։ Ամենից ավելի աղետալի շրջանների թվին են պատկանում, օրինակ, Արևմտյան Վիրգինիայի նահանգը, որտեղ ամբողջ բանվորական ուժի մոտ 15 տոկոսը աշխատանք չունի։ Միչիգանի նահանգում, որտեղ կենտրոնացված են ԱՄՆ-ի խոշորագույն ավտոմոբիլային գործարան-



ները, յուրաքանչյուր ութ աշխատունակ բնակչից մեկը գործազուրկ է։ «Դետրոյտը,— գրում է «Կրիսչեն սայենս մոնիտոր» թերթը,— դա թշվառության քաղաք է։ Այստեղ ավելի քան մեկ քառորդ միլիոն բանվորներ, ըստ երևույթին, մշտապես զրկված են ավտոմոբիլային գործարաններում նորից աշխատանքի անցնելու հնարավորությունից»։

ԱՄՆ-ի ներկայիս էկոնոմիկական վիճակի բնորոշ առանձնահատկությունն այն է, որ չնայած արդյունաբերական արտադրանքի որոշ աճին, գործազրկությունը առաջվա նման գտնվում է անշարժ վիճակում։ Ներկայումս արդյունաբերությունը հասել է այն մակարդակին, որից 1957 թվականին երկրում սկսվել էր տնտեսական ճգնաժամը։ Սակայն գործազուրկների թիվը, նույնիսկ խիստ կերպով իջեցրած պաշտոնական տվյալների համաձայն, նշանակալից չափով գերազանցում է նախաճգնաժամային մակարդակը։ Այդ երևույթի հիմնական պատճառներից մեկը հանդիսանում է տեխնիկական առաջադիմությունը, աշխատանքի արտադրողականության և ինտենսիվության աճը։ Ձեռնարկատերերը շահույթի հետևից վազելով հնացած սարքավորումները

փոխարինում են ավելի կատարելագործված և բարձր արտադրողականություն ունեցող մարքավորումներով, միաժամանակ նրանք ստիպում են բանվորներին աշխատել ավելի լարված, բարձրացնել աշխատանքի ինտենսիվությունը։ Այսպիսով յուրաքանչյուր բանվորի արտադրանքի թողարկումը կտրուկ աճում է և ձեռնարկությունը նախկին քանակությամբ արտադրանք տալու համար պահանջվում է արդեն ավելի քիչ բանվորական ուժ։ Այդ պատճառով էլ ձեռնարկություններում սկսում են ավելի շատ «ավելորդ» բանվորներ երևան գալ, որոնց ձեռնարկատերերը փողոց են նետում։

Ահա մի քանի բնորոշ օրինակներ, որոնք ցույց են տալիս թե ԱՄՆ-ում ինչպիսի հսկայական մասշտաբով է տեղի ունենում բանվորներին արտադրությունից «դուրս նետումը»։ ԱՄՆ-ի ավտոմոբիլային և ավիացիոն արդյունաբերության բանվորների միացյալ պրոֆմիության տվյալների համաձայն, 1957 թվականի մոդելի ավտոմոբիլներ արտադրելու ժամանակ գործարաններում աշխատանքի տեմպը, նախորդ տարվա համեմատությամբ, աճել է 25 տոկոսով, իսկ այդ արտադրանքի թողարկմամբ զբաղվող բանվորների ընդհա-



նուր թիվը կրճատվել է 100 հազար մարդով։ Այս տարվա հունվարին Դեյտրոյտի ավտոմոբիլային գործարանները 11 տոկոսով ավելի ավտոմեքենաներ են բաց թողել, քան մեկ տարի առաջ, իսկ մեկ տարվա ընթացքում կրճատվել է այդ գործարաններում աշխատող բանվորների 11 տոկոսը։ Չիկագոյում ակցիոներական մի խոշոր ընկերություն արտադրության ավտոմատացման շնորհիվ իր ձեռնարկություններում հազար հատ ռադիոապարատներ արտադրելու համար օրվա ընթացքում օգտագործում է 2 բանվոր, նույն չափի արտադրանք տալու համար առաջվա 200 բանվորի փոխարեն։ Տեխնիկական կատարելագործումների և աշխատանքի արտադրողականության աճման կապակցությամբ ԱՄՆ-ի երկաթուղային տրանսպորտում բանվորների և ծառայողների թիվը պակասել է մինչև 1956 թվականի դեկտեմբերը մեկ միլիոնով, իսկ մինչև 1958 թվականի դեկտեմբերը՝ 824 հազարով։ Ընթացիկ տարվա առաջին երեք ամսվա ընթացքում ամերիկյան երկաթուղայինների թիվը կրճատվել է ևս 58 հազար մարդով։

☆ Գործազուրկների բանակը մեծանում է նաև բանվորական ուժի բնական աճի

հաշվին։ Ամեն տարի բանվորական ձեռքերի թիվը ԱՄՆ-ում աճում է մոտավորապես մեկ միլիոն տղաներով ու աղջիկներով, որոնք դառնում են աշխատունակ։ Այդ երիտասարդ մարդիկ, որոնք աշխատանքի ոչ մի փորձ ու որակավորում չունեն, առանձնապես դժվար են աշխատանք գտնում և ճնշող մեծամասնությամբ նրանք ընկնում են գործազուրկների շարքերը։

☆ Գործազրկության քանակի վերաբերյալ չոր թվերի ետևում թաքնված է սոսկալի կարիքի ու քաղցի մռայլ պատկերը։ Նույնիսկ կապիտալիզմի մի այնպիսի համառ պաշտպան, որպիսին աշխատանքի ամերիկյան միացյալ ֆեդերացիայի՝ արտադրական պրոֆմիությունների Կոնգրեսի նախագահ՝ Ջորջ Մինինն է վերջերս խոստովանեց, որ մասսայական խրոնիկական գործազրկությունը հանդիսանում է միլիոնավոր ամերիկացիների ողբերգությունը։

Կապիտալիզմի մի այլ կողմնակից՝ ամերիկյան սենատոր՝ Պոլ Դուգլասը, ապրիլին գործազրկության առթիվ Վաշինգտոնում տեղի ունեցած կոնֆերանսում հանդես գալով հայտարարեց՝ «Արևմտյան Վիրգինիայում և Կենտուկկիում անցկաց-



ված հետաքննությունը ցույց է տվել, որ ներկայումս կան տղամարդիկ, կանայք և երեխաներ, որոնք դանդաղորեն մահանում են քաղցից։ Առանձին տվյալներ, ըստ երևույթին, վկայում են այն մասին, որ այդպիսի վիճակ գոյություն ունի ոչ միայն լեռնահանքային շրջաններում և ոչ միայն վերոհիշյալ նահանգներում»։ Ամերիկյան գործազուրկների սարսափելի դրության մասին հարկադրված խոստովանում է նաև սենատոր Ռանդոլֆը, որը մի խումբ ամերիկյան կոնգրեսմենների հետ վերջերս լինելով Արևմտյան Վիրգինիայի նահանգի հանքափորների ավաններում զրուցել է շատ գործազուրկների հետ։

«Մենք,— հայտարարեց Ռանդոլֆը, հանդես գալով ԱՄՆ-ի սենատում,— լսեցինք տխուր պատմություններ, որոնք կարելի է համեմատել միայն երեսնական թվականների մեծ ճգնաժամի մասին պատմությունների հետ, պատմություններ տղամարդկանց վերաբերյալ, որոնք աշխատանք չեն ունենում ոչ միայն շաբաթների ու ամիսների ընթացքում, այլև մի շարք տարիների ընթացքում, պատմություններ երեխաների վերաբերյալ, որոնք դպրոց չեն հաճախում հագուստ չունենալու պատճառով,

պատմություններ այն մասին, թե ինչպես հայրերը թողնում են իրենց ընտանիքները, որպեսզի նրանց կանայք ու երեխաները կարողանան որևէ օգնություն ստանալ, պատմություններ գողությունների վերաբերյալ, որ կատարում են հայրերը, որպեսզի կերակրեն իրենց երեխաներին»։

☆ Ահա թե ինչպես է նկարագրում իր ընտանիքի վիճակը ամերիկյան գործազուրկներից մեկը պրոֆմիության «Նյուս» թերթին ուղղած իր նամակում. «Մինչև ականջներս թաղվել ենք պարտքի մեջ։ Մեզ տանից դուրս շպրտեցին։ Ոչինչ չունեմ ընտանիքս կերակրելու։ Օգնեցեք մեզ... Ես 35 տարեկան եմ։ Ինքս երկաթուղու մեքենավար եմ։ Պատրաստ եմ գնալու ուզածդ աշխատանքի, բայց որտեղ գտնել այն։ Աշխատանք փնտրելու կապակցությամբ մաշեցի եղած վերջին կոշիկներս։ Մեզ մոտ բավականին շատ են սովյալները... Ի՞նչ անել։ Ո՞րտեղ է ելքը»։ Նմանօրինակ շատ նամակներ են ստանում նաև ամերիկյան մյուս թերթերը։

☆ Ջգտելով գունազարդել գործազուրկների թշվառ վիճակը, ԱՄՆ-ի բուրժուական մամուլը սովորաբար նշում է այն մասին, որ երկրում գոյություն ունի գործազրկու-



թյան ապահովագրման սիստեմ։ Սակայն գործնականում ԱՄՆ-ի սոցիալական ապահովագրությունը ետ է մնում շատ ուրիշ կապիտալիստական երկրներից, որտեղ բանվոր դասակարգին հաջողվել է ավելի նշանակալից զիջումներ ձեռք բերել կապիտալիստներից այդ բնագավառում, քան ամերիկյան բանվորներին։

Ինչպես այս տարվա մարտ ամսին հաղորդել է ամերիկյան մամուլը, վերջին 14 ամիսների ընթացքում 3 միլիոնից ավելի մարդ արդեն կորցրել են գործազրկության կապակցությամբ ստանալիք նպաստի հնարավորությունը, որովհետև վերջացել է նպաստ ստանալու իրավունքի նրանց ժամկետը։ Այդպիսի տխուր վիճակ է սպասում մոտ ամիսներում ուրիշ շատ հարյուր հազարավոր այլ գործազուրկների։ ԱՄՆ-ի աշխատանքի մինիստրության հաշվումներով, ապրիլից մինչև նոյեմբեր, ամսեկան մոտ 200 հազար գործազուրկներ կորցնելու են գործազրկության առթիվ թոշակ ստանալու իրավունքը։ Մարդկանց համար գոյության միակ աղբյուրը մնում է այսպես կոչված ամերիկյան իշխանությունների և մասնավոր բարեգործության մթերային օգնությունը։ Գործազուրկի ընտանիքը, որը

*բաղկացած է չորս անձից, ամսեկան կարող է ստանալ 4,5 կիլոգրամ ցորենի ալյուր, 2,3 կիլոգրամ եգիպտացորենի ալյուր, 900 գրամ բրինձ, 1,8 կիլոգրամ կաթի փոշի և 900 գրամ յուղ։ Նույնիսկ ամերիկյան առողջապահական օրգանների առանձին ներկայացուցիչներ ընդունում են, որ դա գործազուրկների համար նշանակում է «դանդաղ սովամահություն»։ Եվ դա այն ժամանակ, երբ ԱՄՆ-ի պետական պահեստներում կուտակվել է 9 միլիարդ դոլարի այսպես կոչված ալյուրի, յուղի և գյուղատնտեսական այլ ապրանքների «ավելցուկներ», որոնք չեն վաճառվում։*

*☆ Գործազրկության այն հսկայական մասշտաբները, որոնք ընդունել են ԱՄՆ-ում, ժամանակ առ ժամանակ ռեսպուբլիկական և հատկապես դեմոկրատական պարտիաների ղեկավար գործիչներին ստիպում է այդ հարցի առթիվ հանդես գալ ճառերով ու հայտարարություններով։ Սակայն ամերիկյան միլիոնավոր գործազուրկների ծանր վիճակը թեթևացնելու համար գործնականորեն ոչինչ չեն անում ոչ ԱՄՆ-ի կառավարությունը, որը կազմված է ռեսպուբլիկական պարտիայի ներկայացուցիչներից, և ոչ էլ կոնգրեսը, որտեղ մեծա-*



*մասնությունը կազմում են դեմոկրատական պարտիայի ներկայացուցիչները։*

*Դրա համար էլ զարմանալի չէ, որ ամերիկյան միլիարդատերերն ու միլիոնատերերը ուղղակի շահագրգռված են նրանով, որպեսզի երկրում մշտապես գոյություն ունենա աշխատանքի պահեստային բազմամիլիոն բանակ։ Արտահայտելով խոշոր կապիտալի շահերը, ԱՄՆ-ի Աշխատանքային պալատի պրեզիդենտ՝ Մակդոնելը վերջերս բացահայտորեն հայտարարեց, որ «դեմոկրատական (կարդա կապիտալիստական) հասարակության մեջ» բնակչության հարյուր տոկոսանոց զբաղվածությունը հանդիսանում է անհնարին, նույնիսկ «անցանկալի» մի բան։*

*☆ Մասսայական խրոնիկական գործազրկությունը աշխատավորության համար, նրա բոլոր ծանր հետևանքներով, ընդգրկել է ոչ միայն ԱՄՆ-ը, այլև կապիտալիստական աշխարհի մյուս երկրները։*

---

# ԻՆՉ Է ՏԱԼԻՍ ՅՈԹՆԱՄՅԱԿԻ ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ՌՈՊԵՆ

(Թվեր և փաստեր)

★ Գլանման ենթակա պողպատի շիկացումը սովորաբար կատարվում է բոցավառ հնոցներում: Այդ գործողությունը տևում է մինչև 6 ժամ: Լենինգրադի Կիրովի անվան գործարանի գլանողները կիրառում են էլեկտրական մի սարք, որի օգնությամբ գլանվող նյութի շիկացումը կատարվում է 3 րոպեի ընթացքում: Այդ րոպեների նյութական արժեքը բարձրացել է 120 անգամ:

★ Նովո-Կրամատորսկու մեքենաշինական գործարանը երկրի համար բաց է թողնում կարևոր շատ մեքենաներ: Այստեղ հաշվել են, որ բանվորների կողմից կորցրած ամեն մի ոչ արտադրողական րոպեն նշանակում է միլիոնավոր պետական ռուբլիների արժողության նյութերի կորուստ: Այդ ժամանակամիջոցում գործարանի կոլեկտիվը կարող է լրացուցիչ կարգով բաց թողնել «ԷՇ—4—40» 12 հատ էքսկավատոր կամ հանքաքար բարձրացնող 3 մեքենա:

★ Արտադրության մեջ որևէ տեղամասում աշխա-



տանքային ժամանակի մի քանի րոպեների կորուստը կարող է հանգեցնել ամբողջ ձեռնարկության արտադրանքի թողարկման պլանի թերակատարմանը: Մոսկվայի Վ.Ի. Լենինի անվան գործարանում հաշվել են, որ եթե տեղամասերից որևէ մեկը ժամանակին չստանա 500 պտուտակ, ապա գործարանը երկրին 15 էլեկտրաշարժիչ պակաս կտա:

Եթե այդ գործարանի ամեն մի բանվոր հերթափոխության ընթացքում խնայի միայն մեկ րոպե, դա պլանից դուրս տարեկան լրացուցիչ կարգով կտա 30 էլեկտրաշարժիչ:

★ Լենինգրադի «Էլեկտրասիլա» գործարանում 1957 թվականին ժամանակի կորուստը կազմել է 6,6 տոկոս: Եթե կոնկրետացնենք այդ թիվը, ապա կստացվի, որ գործարանը լրացուցիչ կարգով կարող էր բաց թողնել 2 հիդրոգեներատոր և 60 հազար ձիու ուժի կարողությամբ մեկ տուրբոգեներատոր:

★ 1958 թվականին ՍՍՌՄ-ում մեկ րոպեի ընթացքում արտադրվել է մոտ 450 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա: Արդյո՞ք շատ է դա: Պատկերացրեք լավ բարեկարգված մի ավան, որն ունի 300-ից ավելի տուն: Եվ ահա մեր էլեկտրակայանների աշխատանքային մեկ րոպեն կտա այնքան էներգիա, որ բավական կլինի այդ ավանը երեք տարի լուսավորելու համար:

1965 թվականի ամեն մի րոպեի ընթացքում մեզ մոտ պետք է արտադ[illegible] կիլովատ ժամից ավելի էլեկտրաէներգիա:



★ Այժմ Սովետական Միության մեջ յուրաքանչյուր րոպեում արդյունահանվում է 180 տոննայից ավելի երկաթահանք, ավելի քան 230 տոննա նավթ, արտադրվում է ավելի քան 25 տոննա հանքային պարարտանյութ, մոտ 2 հազար կիլոգրամ երշիկեղեն, ավելի քան 3.400 կիլոգրամ հրուշակեղեն, արտահանվում է մոտ 480 հազար քառակուսի մետր անտառանյութ, թողարկվում է ոչ պակաս 48 հատ ժամացույց, 3 լուսանկարչական ապարատ, 2 հեռուստացույց և 7 ռադիոընդունիչ։

Յուրաքանչյուր չորս րոպեում մեր գործարանների կոնվեյերներից դուրս է գալիս հացահատիկային մեկ կոմբայն և մեկ մետաղահատ դազգահ։

★ 1958 թվականին յուրաքանչյուր րոպեում մեզ մոտ արտադրվել է ավելի քան 1200 քառակուսի մետր փափուկ ծածկաթիթեղ, ավելի քան 4600 պայմանական շիֆերային սալիկներ, մոտ 260 քառակուսի մետր պատուհանի ապակի։

★ 1959—1965 թվականներին Սովետական Միությունում պետական կապիտալ ներդրումների և պետական վարկի օգնությամբ բնակչության միջոցների հաշվին կառուցվելու է 650—660 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տուն, կամ մոտ 15 միլիոն բնակարան։ Դա նշանակում է, որ յոթնամյակի յուրաքանչյուր րոպեում միջին հաշվով կառուցվելու է 4 բնակարան։

★ 1958 թվականին մեկ րոպեում արտադրվել է.



բամբակյա գործվածքներ՝ մոտ 20 հազար մետր, բրդյա գործվածքներ՝ ավելի քան 100 մետր, գուլպեղեն՝ երեք հազար զույգից ավելի, կաշվե կոշկեղեն՝ ավելի քան 1200 զույգ։

★ 1965 թվականին յուրաքանչյուր րոպեում մենք պետք է արդյունահանենք ավելի քան 2 հազար տոննա ածուխ, ձուլել՝ 125—135 տոննա չուգուն, թողարկել 2 հատ տրակտոր և 3 ավտոմոբիլ։

Յոթնամյակի տարիներին խիստ կերպով աճելու է ածխի հանույթը Սիբիրի շրջաններում։ 1965 թվականին ածխահատներն այստեղ մեկ րոպեում արդյունահանելու են ոչ պակաս 600 տոննա ածուխ։

★ Մոսկվայի «Բուրեվեստնիկ» կոշիկի ֆաբրիկան մեկ րոպեում ներկայումս պատրաստում է 50 զույգ տարբեր տեսակի կոշիկներ։

★ Օրեխովո-Զույևոյի բամբակյա գործվածքների կոմբինատը ներկայումս յուրաքանչյուր րոպեի ընթացքում թողարկում է ավելի քան 93 կիլոգրամ մանվածք, 356 մետր կոշտ գործվածք, 474 հատ կոճի թել, 655 մետր պատրաստի գործվածք։

Եթե հաջողվի լիկվիդացնել Տրյոխգորնայի կոմբինատի գործվածքային ֆաբրիկայում բոլոր պարապուրդները, ապա միայն կես տարվա ընթացքում կարելի կլիներ լրացուցիչ կարգով թողարկել 102 հազար մետր գործվածք։

---

Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ

## СОДЕРЖАНИЕ


Стр.

Агитатор в первых рядах выполнявших семилетний план . . . . . . . . 1

**МАТЕРИАЛЫ ДЛЯ БЕСЕД**

**К. Погосян.**— Литература служит народу . . . 10

**СЕЛЬСКОХОЗЯЙСТВЕННЫЕ ТЕМЫ**

**Л. Гарибян.**— По примеру А. Гиталова и Н. Мануковского . . . . . . . . . . 21

**ИЗ ОПЫТА ПЕРЕДОВИКОВ**

**О. Зироян.**— Как добились высокого удоя молока . . . . . . . . . . . . 31

**МЕЖДУНАРОДНЫЕ ТЕМЫ**

Безработица в Соединенных Штатах Америки (Цифры и факты) . . . . . . . . . 35

**ИСПОЛЬЗУЙ ВО ВРЕМЯ БЕСЕДЫ**

Что даст каждая минута семилетки (Цифры и факты) . . . . . . . . . . 46



**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 11** **1959 г.**

*ՎՖ 04485* *Պատվեր 375* *Տիրաժ 9156*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8։*

*Գինը 50 կոպ.*